Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի բլոկնոտ

ОБЯЗАТЕЛЬНЫЙ
ЭКЗЕМПЛЯР

№ 9 ՄԱՅԻՍ 214 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78։



7008-Կ.2

# ՆՈՐ ՕՐԵՆՔԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հարազատ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդադրում հոգ են տանում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման համար: Վերջերս ՍՄԿՊ Կենտկոմը մեր երկրի համար կենսական նշանակություն ունեցող որոշում ընդունեց, որը վերաբերում էր կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին, իսկ ՍՍՌՄ Գերագույն Սովետը այդ կապակցությամբ ընդունեց օրենք:

Այժմ ի կատարումն այդ որոշման ու օրենքի, ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը նոր և ծավալուն որոշում են ընդունել նորոգման-տեխնիկական կայանների, գյուղատնտեսության նյութա-տեխնիկական մատակարարումը կազմակերպելու, աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետների գործկոմների գյուղատն-






5038-58

տնտեսության տեսչությունների, գյուղատնտեսական կադրերի, կոլտնտեսությունների և ՆՏԿ-ների ֆինանսավորման ու վարկավորման մասին։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ նորոգման-տեխնիկական կայանների վրա խոշոր պարտավորություններ են դրվում։ Այսուհետև նրանք նորոգելու են կոլտնտեսությունների, ինչպես նաև արհեստանոցներ չունեցող սովխոզների, գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների տրակտորները, կոմբայնները, ավտոմոբիլները, գյուղատնտեսական մյուս մեքենաներն ու գործիքները։ Բացի այդ, ՆՏԿ-ները պարտավոր են օգնություն ցույց տալ կոլտնտեսություններին մեքենատրակտորային պարկի օգտագործման և տեխնիկական սպասարկման գործում։ Չէ՞, որ այժմ կոլտնտեսությունների առաջնահերթ խնդիրն է՝ ճիշտ և արդյունավետ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան և ժամանակին ու բարձր որակով կատարել վարի, ցանքի ու մշակության աշխատանքները։

Առաջիկայում ՆՏԿ-ները կոլտնտեսություններում և սովխոզներում կատարելու են նաև մելիորատիվ, իռիգացիոն, հարթագծման ու



ճանապարհային, պտղատու և խաղողի այգիներ գցելու, պլանտաժային, լճակներ, ջրամբարներ կառուցելու և բազմաթիվ այլ աշխատանքներ։

Դրանով չեն սահմանափակվում ՆՏԿ-ների ֆունկցիաները։ Նրանք կոլտնտեսություններին ու սովխոզներին պետք է օգնություն ցույց տան անասնաբուծության և տնտեսության մյուս ճյուղերում աշխատատար պրոցեսների մեքենայացման ու էլեկտրիֆիկացման աշխատանքներ կատարելու, գյուղատնտեսական մթերքներ և ուրիշ բեռներ փոխադրելու գործում։

Նոր որոշմամբ ՆՏԿ-ների վրա պարտականություն է դրվում կոլտնտեսություններին և սովխոզներին մատակարարել նոր տեխնիկա, պահեստամասեր, նավթամթերքներ, պարարտանյութեր, թունաքիմիկատներ և արտադրական նպատակին ծառայող ուրիշ ապրանքներ։ ՆՏԿ-ները պայքարելու են նաև գյուղատնտեսական բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ։ Բացի այդ, ՆՏԿ-ները կոլտնտեսություններին ու սովխոզներին վարձակալությամբ տրամադրելու են այնպիսի մեքենաներ, որոնք նրանց համար աննպատակահարմար է ձեռք բերել

աշխատանքների աննշան ծավալի կապակցությամբ:

Նորոգման-տեխնիկական կայանները կոլտնտեսություններին օգնություն են ցույց տալու նաև արտադրության մեջ նոր տեխնիկան, գիտության նվաճումները, մեքենա-տրակտորային պարկի օգտագործման ու պահպանման, ինչպես նաև մեխանիզատորական կադրերի որակավորման բարձրացման բնագավառի առաջավոր փորձն արմատավորելու գործում: Միաժամանակ կոլտնտեսությունների, սովխոզների և շրջանի գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների մեքենա-տրակտորային պարկերի վիճակի նկատմամբ ՆՏԿ-ները իրագործում են պետական տեխնիկական վերահսկողություն:

Ինչպես հայտնի է գյուղատնտեսության ամբողջ արտադրությունը մեքենայացնելու գործում խոշոր նշանակություն ունի նյութատեխնիկական մատակարարումը: Ինչ խոսք, եթե մեր կոլտնտեսություններն ու սովխոզները ժամանակին ստանան այն բոլոր մեքենաներն ու սարքավորումները, պահեստամասերն ու գործիքները, նավթամթերքներն ու պարարտանյութերը և արտադրական նպատակի ծառայող մյուս ապրանքները, նրանք



կաշխատեն ավելի արդյունավետ և երկրին կտան ավելի շատ կենսամթերք:

Այժմ նոր որոշմամբ լիովին բարելավվում է կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների նյութատեխնիկական ապահովումը: Նախ հիմնական նյութա-տեխնիկական միջոցների վաճառքը կենտրոնացվում է մեկ տեղում՝ նորոգման-տեխնիկական կայաններում, ապա այն կատարվելու է կոլտնտեսությունների և սովխոզների պատվերներով:

Որպեսզի կոլտնտեսությունները, սովխոզները և ՆՏԿ-ները անխափան մատակարարվեն տրակտորների, ավտոմոբիլների և գյուղատնտեսական մեքենաների պահեստամասերով, ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշել են այդ պահեստամասերի արտադրության համար անհատական պատասխանատվություն դնել ժողտնտխորհների նախագահների վրա: Բացի այդ այսուհետև տրակտորների, ավտոմոբիլների և գյուղատնտեսական մեքենաների պահեստամասեր պատրաստող արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական պլանը կատարված է համարվում այն դեպքում, եթե ձեռնարկությունը կատա-

րել է տրված նոմենկլատուրայով հիշյալ պահեստամասեր արտադրելու պլանը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Մինիստրների Սովետի նոր որոշմամբ փոփոխություններ է մտցվում շրջգործկոմների կառուցվածքի մեջ, նրանց կազմում ստեղծվում են գյուղատնտեսության շրջանային տեսչություններ, որի պետը հանդիսանում է շրջգործկոմի նախագահի տեղակալը։

Գյուղատնտեսության շրջանային տեսչության վրա խնդիր է դրվում՝ պրոպագանդել և գյուղատնտեսության արտադրության մեջ արմատավորել առաջավոր փորձը ու գիտության նվաճումները, կազմակերպել սերմնաբուծության ու տոհմաբուծության, հողաշինարարության և հողերի պետական հաշվառումը։ Բացի այդ, գյուղատնտեսության շրջանային տեսչության ֆունկցիաների մեջ է մտնում անասնաբուժական ծառայության կազմակերպումը, գյուղատնտեսական բույսերի վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարի միջոցառումների իրականացման հսկողությունը, կոլտնտեսությունների հաշվապահական հաշվառումը կազմակերպելու և տարեկան ու եռամսյակային հաշվետվությունները կազմելու գործում կոլտնտեսություններին օգնություն ցույց տալը։



Գյուղատնտեսության շրջանային տեսչությունների տնօրինությանն է հանձնվում նաև վերակազմվող ՄՏԿ-ների կոնտրոլ-սերմնաբուծական ու ագրոքիմիական լաբորատորիաները, գյուղատնտեսական կենդանիների արհեստական սերմնավորման կայանները և ինկուբատորա-թռչնաբուծական կայանները։

Գյուղատնտեսության ղեկավարումը բարելավելու գործում վճռական դերը պատկանում է կադրերին։ Այդ նկատի ունենալով պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը կոլտնտեսություններին խորհուրդ են տալիս վերակազմվող ՄՏԿ-ներից մշտական աշխատանքի ընդունել գյուղատնտեսության մասնագետներին և նրանց վարձատրությունը կատարել այն հաշվով, որ նրանց ամսեկան վաստակը ցածր չլինի այն աշխատավարձից, որ սահմանված է ՄՏԿ-ների համապատասխան մասնագետների համար։ Մինչև 1958 թվականի հուլիսի 1-ը պահպանվելու է ՄՏԿ-ներից կոլտնտեսությունները աշխատանքի փոխադրված մասնագետների աշխատավարձը։ Նրանց համար պահպանվելու է նաև արձակուրդների և պետական սոցիալական ապահովագրման նպաստներ վճարելու ներ-

կայքի կարգը և կոլտնտեսություններում նրանց կատարած աշխատանքի ժամանակը մտցվելու է ընդհանուր աշխատանքային ստաժի մեջ։

Կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում մեխանիզատորների աշխատանքի վարձատրությունը սահմանել յուրաքանչյուր կոլտնտեսությունում ընդունված ընդհանուր կարգի համապատասխան և արտադրված արտադրանքի քանակի ու կատարված աշխատանքների որակի համեմատ, սակայն այն հաշվով, որ մեխանիզատորների վարձատրման մակարդակը ցածր չլինի այն վարձատրությունից, որ նրանք մեքենատրակտորային կայաններում ստանում էին երաշխավորված արտադրական մինիմում նորման կատարելու համար։

ՌՏԿ-ների կոմպլեկտավորումը մշտական բանվորների կադրերով կատարում են կայանների դիրեկտորները՝ ելնելով կոլտնտեսությունների անխափան սպասարկման, արհեստանոցների աշխատանքի և ՌՏԿ-ներում մնացող տրակտորիստների ու գյուղատնտեսական մեքենաների արտադրողաբար օգտագործումն ապահովելու խնդիրներից, նկատի ունենալով բանվորների լրիվ ծանրաբեռնումը ամբողջ տարվա ընթացքում։



Որոշված է աշխատանքային ռեզերվների սիստեմի գյուղատնտեսության մեքենայացման, տեխնիկական, արհեստագործական, շինարարական ուսումնարաններում և դպրոցներում կազմակերպել կոլտնտեսությունների ուղեգրերով տրակտորիստների, մեքենավարների, մեխանիկների, էլեկտրիկների, կառուցողների և մասսայական պրոֆեսիաների տեր այլ կադրերի պատրաստումը։

Նոր որոշմամբ խոշոր ուշադրություն է դարձվում կոլտնտեսությունների և ՌՏԿ-ների ֆինանսավորման ու վարկավորման վրա։ Կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում անհրաժեշտ փոփոխություններ մտցնել Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության մեջ, նկատի ունենալով, որ զգալիորեն ավելացել է կոլտնտեսությունների սեփական շրջանառու միջոցների ֆոնդը։ Կոլտնտեսությունները պետք է ավելացնեն դրամական եկամուտների մասհանումները անբաժանելի ֆոնդերի համար, որպեսզի կարողանան ապահովել հանրային տնտեսության հետագա աճը, կառուցեն դպրոցներ, հիվանդանոցներ, ճանապարհներ, ձեռք բերեն տրակտորներ, կոմբայններ և գյուղատնտեսական ուրիշ մեքենաներ։

Արտադրական և առևտրական նորմալ գոր-

ծունեության համար, նորոգման-տեխնիկական կայանները ունենալու են սեփական շրջանառու միջոցներ, որով հնարավոր կլինի ձեռք բերել գյուղատնտեսական մեքենաներ և անհրաժեշտ նյութեր, ինչպես սեփական արտադրության, այնպես էլ կոլտնտեսություններին ու սովխոզներին մատակարարելու համար։ Միաժամանակ ՆՏԿ-ները ունենալու են ձեռնարկության ֆոնդ՝ աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և արտադրության կատարելագործման համար։

Ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում նոր օրենքը մտել է գործողության մեջ։ Արդեն ռեսպուբլիկայի 810 կոլտնտեսություններից 529-ը ՄՏԿ-ներից գնել են իրենց անհրաժեշտ գյուղատնտեսական տեխնիկան։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջերմորեն պաշտպանում են պարտիայի և կառավարության նոր որոշումը, որովհետև այն բացառիկ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական գյուղատնտեսության նոր և խոշոր վերելքի համար։

---

## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԻՄՆԱԴԻՐԸ

### (Կ. ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 140-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Մայիսի 5-ին լրանում է գիտական կոմունիզմի հիմնադիր, միջազգային պրոլետարիատի մեծ ուսուցիչ և առաջնորդ, հանճարեղ մտածող Կարլ Մարքսի ծննդյան 140-ամյակը։ Կարլ Մարքսը ծնվել է 1818 թվականի մայիսի 5-ին, Գերմանիայի Հռենոսյան մարզի Թրիր քաղաքում, իրավաբանի ընտանիքում։ Մանկական և պատանեկան տարիները Մարքսը անց է կացրել իր հայրենի քաղաքում, որտեղ 1830 թվականից մինչև 1835 թվականը նա սովորել և ավարտել է տեղի գիմնազիան։ Դեռ մանկական տարիներից Մարքսը աչքի էր ընկնում իր արտասովոր ընդունակություններով, սիրում էր շատ կարդալ և խոր կերպով մտածել հասարակությանը ծառայելու իր ձգտումներն իրականացնելու մասին։

Գիմնազիան ավարտելուց հետո Մարքսը

սկզբում սովորեց Բոննի և ապա Բեռլինի համալսարանների իրավաբանական ֆակուլտետներում։ Իրավաբանությունից բացի Մարքսը միաժամանակ հետաքրքրվում էր նաև փիլիսոփայությամբ ու պատմությամբ։ 1841 թվականին Մարքսը ստացավ Իենի համալսարանի փիլիսոփայության դոկտորի գիտական աստիճան։ Ավարտելով համալսարանը, Մարքսը ցանկանում էր իրեն նվիրել գիտական գործունեության Բոննի համալսարանում։ Սակայն ռեակցիոն պրուսական կառավարությունը, որը առաջադեմ գիտնականներին զրկում էր համալսարաններում դասախոսելու իրավունքից, թույլ չտվեց Մարքսին իրականացնելու իր ձգտումները։ Մարքսը չընկճվեց։ 1842 թվականի աշնանը ստանձնելով պրոգրեսիվ «Հռենոսյան թերթի» խմբագրի պաշտոնը, նա սկսեց հանդես գալ նոր, առաջադեմ գաղափարների պրոպագանդայով։

Նրա ազդեցության տակ «Հռենոսյան թերթը» աստիճանաբար ստացավ ռևոլյուցիոն-դեմոկրատական ուղղություն։ Թերթի էջերում Մարքսը համարձակ պայքար ծավալեց սոցիալական-քաղաքական ու մտավոր բոլոր տեսակի ճնշումների և հալածանքների դեմ, Հանդես գալով ժողովրդական մասսա-



ների նյութական շահերի իսկական պաշտպանի դերում։ 1843 թվականի ապրիլ ամսին ռեակցիոն պրուսական կառավարությունը փակում է «Հռենոսյան թերթը» և Մարքսը ստիպված թողնում է Գերմանիան ու մեկնում է Ֆրանսիա։ Արտասահմանում Մարքսը ավելի վճռականորեն սկսեց հանդես գալ մամուլում, շարադրելով իր ռևոլյուցիոն-դեմոկրատական հայացքները։ Ուշադրությամբ ծանոթանալով շրջապատի հետ, հաճախելով բանվորական ժողովները, Մարքսը եկավ այն համոզման, որ աշխատավորության իսկական ազատության համար բավական չէ տապալել թագավորներին ու հողատերերին, այլ հարկավոր է ոչնչացնել ամբողջ բուրժուական սիստեմը, իսկ դա կարող է անել ոչ թե ռևոլյուցիոներների մի փոքրիկ խումբ, այլ ամբողջ բանվոր դասակարգը։

Մարքսը առաջինը եղավ, որ ուսումնասիրելով բանվորական շարժման պատմությունը և խոր կերպով հասկանալով կապիտալիզմի էությունը, հայտնագործեց պրոլետարիատի՝ որպես կապիտալիզմի գերեզմանափորի պատմական դերը։

1844 թվականի սեպտեմբեր ամսին Փարիզ ժամանեց Ֆրիդրիխ Էնգելսը, որը այդ ժամանակից ի վեր դարձավ Մարքսի մերձավոր

բարեկամը և զինակիցը։ Նրանք սերտ մասնակցություն ունեցան Փարիզի այն ժամանակվա ռևոլյուցիոն խմբակների գործունեությանը։ Այնուհետև Մարքսն ու Էնգելսը 1847 թվականին մի շարք առաջավոր բանվորների ակտիվ մասնակցությամբ հիմնադրեցին «Կոմունիստների Միությունը», որի հանձնարարությամբ էլ նրանք գրեցին «Կոմունիստական պարտիայի Մանիֆեստը»։ Այդ նշանավոր աշխատության մեջ նրանք շարադրեցին իրենց ռևոլյուցիոն գաղափարները պրոլետարիատի՝ որպես վեր բարձրացող, առաջավոր դասակարգի մասին, որին պատկանում է ապագան, և կապիտալիզմի՝ որպես փթող դասակարգի մասին, որը դատապարտված է անխուսափելի կործանման։

1848 թվականի մարտ ամսին, Գերմանիայում բռնկվեց բուրժուական ռևոլյուցիան։ Մարքսը Փարիզից փոխադրվեց Քյոլն և կանգնեց մարտական «Նոր Հռենոսյան Թերթի» գլուխ, որպես նրա խմբագիր։ Այդ թերթի էջերից կրկին հնչեց Մարքսի բոցաշունչ ձայնը՝ ուղղված Եվրոպայի բոլոր ժողովուրդներին և առանձնապես գերմանական ժողովրդին։ Մարքսը կոչ էր անում բանվորներին, գյուղացիներին և բոլոր երկրների ռևոլյուցիոն դեմոկրատներին՝ զենքը ձեռքին



դուրս գալու ռևոլյուցիոն պայքարի բոլոր շահագործողների ու հարստահարիչների դեմ։ Բայց ռևոլյուցիան պարտվեց, կոնտրռևոլյուցիոն կառավարողները Մարքսին դատի տվեցին և նրան արտաքսեցին Գերմանիայից, Մարքսը անցավ Փարիզ և ապա Լոնդոն, որտեղ և ապրեց մինչև իր մահը։

Չնայած ռեակցիայի երկար ու ծանր տարիներին և կրած մեծ զրկանքներին, Մարքսը մինչև վերջ հավատարիմ մնաց բանվոր դասակարգի մեծ գործին։ 50-ական թվականների վերջերին և 60-ական թվականների սկզբին, երբ Եվրոպայում սկսվեց ծավալվել դեմոկրատական ու բանվորական շարժումները, Մարքսը նորից նետվեց պրակտիկ ռևոլյուցիոն գործունեության մեջ։ Նրա ղեկավարությամբ 1864 թվականին անգլիական և ֆրանսիական բանվորներին հաջողվեց Լոնդոնում հիմնադրել նշանավոր «Միջազգային բանվորական ընկերությունը»՝ Առաջին Ինտերնացիոնալը։ Մարքսը ամբողջապես նվիրեց իրեն տարբեր երկրների բանվորական լայն մասսաների համախմբման և կազմակերպման գործին։ Նա հասավ այն բանին, որ տարբեր երկրների առաջավոր բանվորները կանգնեցին միջազգային բանվորական ընկերության դրոշի տակ։ Այդ ընկերության

Դիմումի, նրա բազմաթիվ բանաձևերի, հայտարարությունների ու մանիֆեստների հեղինակը Մարքսն էր։ Միավորելով տարբեր երկրների բանվորական շարժումները, Մարքսը մշակեց այդ երկրների բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի միասնական տակտիկան։

Մարքսը խանդավառությամբ ողջունեց ֆրանսիական բանվորների հերոսական պայքարը և նրանց փայլուն հաղթանակը՝ Փարիզյան Կոմունան։ Չնայած այն բանին, որ Կոմունան պարտվեց, բայց նա ուժգին հարված հասցրեց շահագործող դասակարգերին։ Շատ երկրներում սկսեցին ստեղծվել սոցիալիստական պարտիաներ և նրանց կողմից ղեկավարվող պրոֆեսիոնալ կազմակերպություններ։ Այդ կազմակերպությունների առաջին քայլերը մեծ հոգատարությամբ ղեկավարում էր Մարքսը։

Մինչև իր կյանքի վերջին րոպեն Մարքսը չէր դադարում պայքարելու բանվոր դասակարգի ազատագրության գործի համար։ Նա շարունակում էր աշխատել «Կապիտալի» վրա, հավաքելով բազմաթիվ նոր նյութեր։ Մտավոր լարված աշխատանքը և Ինտերնացիոնալում ծավալած ակտիվ պայքարը վերջիվերջո քայքայեցին Մարքսի առողջությունը։



1883 թվականի մարտի 14-ին, Մարքսը վախճանվեց։ Նա հողին հանձնվեց Լոնդոնի Հայգետի գերեզմանոցում։

Մարքսի գրչին են պատկանում շատ նշանավոր աշխատություններ, որոնք հիմնըված են փաստերի խոր գիտական վերլուծման վրա, շնչում են ռևոլյուցիոն ոգով։ Մարքսի կյանքի մեծագույն գործը «Կապիտալն» է։ Այդ հանճարեղ աշխատության մեջ շարադրված է Մարքսի տնտեսական ուսմունքը և հիմնավորված է պրոլետարիատի, որպես հասարակությունը վերափոխողի, ռևոլյուցիոն դերը։ «Կապիտալը» պատկանում է այն մեծագույն երկերի թվին, որոնք երբևիցե գրված են եղել մարդկային հասարակության պատմության մեջ։ «Կապիտալ»-ում Մարքսը անվիճելիորեն ապացուցեց, որ կապիտալիստական հասարակարգը հասել է իր զարգացման այն աստիճանին, որ կաշկանդում է մարդկային հասարակության զարգացման ընթացքը, միլիոնավոր աշխատավորների մատնում է սարկացման ու քայքայման։

Մարքսը անվիճելիորեն ապացուցեց, որ կապիտալիզմը պատմականորեն դատապարտված է կործանման, որ կապիտալիզ-






5038-

մի զարգացմամբ ստեղծված պրոլետարիատը անխուսափելիորեն վերջ կտա շահագործող իրավակարգին և կստեղծի սոցիալիստական հասարակարգ։ Մարքսը հռչակեց այն ուսմունքը, որ սոցիալիզմին անցնելու համար բանվոր դասակարգը պետք է կատարի ռևոլյուցիա, իշխանությունը վերցնի իր ձեռքը, ստեղծի իր դիկտատուրան և արտադրության միջոցները դարձնի հասարակության սեփականություն։

Մարքսի մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ նա հիմնավորեց պրոլետարիատի համար քաղաքական պարտիա ունենալու անհրաժեշտությունը։

Բանվորական շարժման գործիչներին նա դաստիարակում էր գիտական սոցիալիզմի սկզբունքների աննկուն պաշտպանության ոգով։ Մարքսը անհաշտ թշնամի էր բանվոր դասակարգի բոլոր տեսակի հակառակորդներին։ Իր կյանքի ամբողջ ընթացքում Մարքսը սերտորեն կապված էր բանվորների հետ։ Լոնդոնի նրա համեստ բնակարանի դռները բաց էին զանազան երկրներից եկած բանվորների առջև, նա պարապմունքներ էր անցկացնում բանվորների հետ, նրանց համար զեկուցումներ էր կարդում, մեծ քանակությամբ



նամակներ էր գրում բանվորական գործիչներին, հանդես էր գալիս միտինգներում և մասնակցում շքերթներին։

90-ական թվականներին Ռուսաստանում հնչեց երիտասարդ ռևոլյուցիոներ Վլադիմիր Իլյիչ Լենինի հուժկու ձայնը։ Լենինը հայտարարեց, որ Մարքսի ռևոլյուցիոն թեորիան միակ ճիշտ սոցիալիստական թեորիան է, որը ցույց է տալիս բանվոր դասակարգի հաղթանակի և ազատության ճանապարհը։

Լենինը հարստացրեց մարքսիստական թեորիան նոր և շատ կարևոր դրույթներով, զարգացման նոր աստիճանի բարձրացրեց մարքսիստական ուսմունքը։ Լենինը հիմնավորեց այն կարևոր դրույթը, որ իմպերիալիզմը կապիտալիզմի նոր և վերջին ստադիան է, մշակեց սոցիալիստական ռևոլյուցիայի թեորիան, հիմնավորեց մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության հանճարեղ եզրակացությունը։ Լենինը հայտնագործեց սովետական իշխանությունը, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև։ Նա զարգացրեց բանվոր դասակարգի ու գյուղացիության, գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների դաշինքի նոր ուսմունքը, ստեղ-

ծեց պրոլետարիատի նոր պարտիա, նրա ստրատեգիան ու տակտիկան։

Լենինի աշխատությունների շնորհիվ մարքսիստական թեորիան է՛լ ավելի պարզ է լուսավորում բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության ճանապարհը դեպի կոմունիզմ։ 1917 թվականի Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեր երկրում ստեղծեց սոցիալիստական իրավակարգ։ Այժմ սոցիալիզմի գործը հաղթանակել է մի շարք երկրներում։ Սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ։ Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը կազմում է մեր ժամանակի հիմնական բովանդակությունը։ Մարդկության մեկ երրորդը բռնել է սոցիալիստական շինարարության լայն ճանապարհը։ Մարքսի, Էնգելսի, Լենինի ցույց տված ճանապարհով ընթանում է համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժումը։ Զինված մարքս-լենինյան մեծ ուսմունքով կոմունիստական և բանվորական պարտիաները նորանոր հաղթանակներ են ձեռք բերում սոցիալիստական շինարարության բնագավառում։ Հավատարիմ մնալով մարքս-լենինյան ուսմունքին այդ պարտիաները անդադրում հարստաց-



նում են այն նոր փորձով և թեորիական նոր դրույթներով։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները, սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների խորհրդակցության Դեկլարացիան, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումները կարևորագույն թեորիական փաստաթղթեր են, որոնք հարստացնում են մարքսիզմ-լենինիզմի գիտության շտեմարանը։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ լուծում է կոմունիստական շինարարության ստեղծագործական խնդիրները։ Բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և սովետական ինտելիգենցիան անձնվեր աշխատանքով բարձրացնում են մեր սոցիալիստական պետության հզորությունը, բարձրացնում են մեր ժողովրդի բարեկեցությունը, նվաճում գիտության և կուլտուրայի նորանոր բարձունքներ։

Մարքսի և Լենինի իդեաները մարմնավորվում են մեր ժողովրդի, սոցիալիստական երկրների ժողովուրդների և միջազգային բանվորական շարժման սքանչելի գործերում։

# ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ՑԱՆՔԵՐԻ ԽՆԱՄՔԸ

Պ. ԱՄԻՐՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գլխավոր ագրոնոմ

Այս տարվա գարնանային բարենպաստ եղանակները ոտքի են հանել գյուղատնտեսության բոլոր աշխատավորներին՝ գարնանային աշխատանքները սեղմ ժամկետում և բարձր որակով ավարտելու համար։ Բարձր բերքի վարպետները պարզել են, որ առատ բերք ստանալու համար բավական չէ միայն ցանքը կատարել լավ մշակված ու պարարտացված հողում, այլև անհրաժեշտ է ցանքից հետո սիստեմատիկ կերպով հետևել բույսի աճմանն ու զարգացմանը և ապահովել խնամքի համար պահանջվող կոմպլեքս միջոցառումները։

Հացահատիկային կուլտուրաների գարնանային խնամքի կարևոր միջոցառումների շարքին է պատկանում սնուցումն ու փոց-



խումը։ Բասարգեչարի, Ախուրյանի, Ախտայի և այլ շրջանների առաջավոր կոլտնտեսությունները տարիների փորձից համոզվել են, որ ուժեղ աճած աշնանացանը լավ է սնուցել միայն ֆոսֆորական պարարտանյութով յուրաքանչյուր հեկտարին տալով մեկից մեկ ու կես ցենտներ սուպերֆոսֆատ։ Իսկ թույլ թփակալած, վատորակ ցանքերը սնուցել նաև ազոտով՝ հեկտարին տալով մոտ մեկ ցենտներ սելիտրա, ինչպես նաև գոմաղբով, թռչնաղբով և տեղական այլ պարարտանյութերով։ Ցանքատարածությունները սնուցելուց հետո, դաշտը պետք է անպայման փոցխել, որպեսզի պարարտանյութերը խառնվեն հողի հետ։ Բացի այդ, նրանք համոզվել են, որ փոցխումը ոչնչացնում է մոլախոտերի ծիլերը, կանխում է հողի մեջ եղած խոնավության գոլորշիացումը, օդը ազատ մուտք է գործում հողի մեջ և դրանով պայմաններ ստեղծում հողում միկրոբիոլոգիական պրոցեսները արագացնելու։ Փոցխումը նրանք կատարում են նաև այն դաշտերում, որտեղ սնուցում չի կատարվել։

Հացահատիկային կուլտուրաների խնամքի, հետևապես և բերքատվության բարձ-

րացման անհետաձգելի միջոցառում է հանդիսանում նաև քաղհանը։

Հայտնի է, որ շատ մոլախոտեր իրենց բիոլոգիական առանձնահատկությունների շնորհիվ ընդունակ են ավելի արագ աճելու, ավելի շատ ջուր գոլորշիացնելու, քան մշակվող գյուղատնտեսական կուլտուրաները։ Պարզված է նաև, որ մոլախոտերը արագ կլանում են խոնավությունը և չորացնում ոչ միայն հողի վերին շերտը, այլ նաև հողի ենթաշերտերն ու այդպիսով կուլտուրական բույսերին զրկում ինչպես խոնավությունից, այնպես էլ սննդանյութերի պաշարից։ Դրա համար էլ անխնա պայքարը մոլախոտերի դեմ, համարվում է ինչպես հացահատիկային, այնպես էլ մշակվող գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացման հիմնական գործոններից մեկը։

Ցանքերում աճած մոլախոտերի դեմ ծավալվող պայքարի հիմնական միջոցներից է նաև քիմիական նյութերի սրսկումը ինքնաթիռի կամ տրակտորի միջոցով։ Օրինակ, անցյալ տարի Բասարգեչարի և Սևանի շրջաններում հացահատիկային ցանքերը սրսկելով «24—Դ» քիմիական պրեպարատով ցանքերը մաքրեցին երկշաքիլանի շատ տե-



սակի մոլախոտերից և դրանով ոչ միայն ապահովեցին հացահատիկի բարձր բերք, այլև խնայեցին ահագին բանվորական ձեռքեր։ Այս տարի մեր ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում մոլախոտերի դեմ քիմիական եղանակով պայքար է տարվել։ Սակայն ամեն տեղ չէ, որ հնարավոր կլինի ընթացիկ տարում հացահատիկի ցանքատարածություններում մոլախոտերի դեմ պայքարը տանել քիմիկատներով։ Հետևապես պայքարի հիմնական միջոցառումը առայժմ պետք է համարել ձեռքով քաղհանը, որը պետք է կատարել որքան կարելի է վաղ ժամկետում, մոլախոտերի մասսայական ծլման առաջին օրերին և բարձր որակով։ Քաղհանած մոլախոտերը ոչ մի դեպքում չի կարելի թողնել դաշտում, որովհետև խոնավ հողի վրա ընկած մոլախոտերի որոշ տեսակներ օրինակ՝ խատուտիկը, փուշը և այլն ընդունակ են նորից արմատակալել, նույնիսկ ծաղկել ու հասունանալ։

Խոնավ եղանակներին մոլախոտերը զարգանում են ավելի ինտենսիվ և փարթամ։ Ուստի դրան համապատասխան էլ հարկավոր է ուժեղացնել նաև քաղհանի աշխատանքները, այդպիսին կրկնելով այնքան

անգամ, ինչքան հարկավոր կլինի դաշտը պահել մոլախոտերից զերծ, մաքուր վիճակում։ Քաղհանը պետք է կատարել մինչև հացահատիկի բույսերի խողովակակալումը։

Քաղհանը դեռ արմատական միջոցառում չէ, ցանքերը մոլախոտերից ազատ պահելու համար։ Գործնականում պարզված է, որ այդպիսի արմատական միջոցառումներից մեկը համարվում է մոլախոտերի սերմերի զարգացման, տարածման հիմնական օջախների լիկվիդացումը։ Այդպիսի օջախներ են հանդիսանում միջնակները, քարերով և քարակույտերով զբաղեցված տարածություններ, դաշտի գլխամասի բացուտները և այլն։

Այդ տարածությունների վրա մոլախոտերը հաջող զարգանալով սերմակալում են և սերմերը հեշտ կերպով տարածում ցանքերի մեջ։

Խնամքի նկատմամբ խիստ զգայուն է հատկապես եգիպտացորենը, մանավանդ աճման առաջին ամիսներին։ Ընդհանրապես նկատված է, որ եգիպտացորենը, ինչպես նաև բամբակը, ծխախոտը, շաքարի ճակնդեղը և մի շարք այլ կուլտուրաների բույսեր իրենց աճման ընթացքում պահանջում են առատ օդ, ջերմություն և խոնավու-



թյուն, որը կարելի է կարգավորել միայն դաշտը փխրեցնելու միջոցով։ Փխրեցման գործը մինչև վերջերս էլ տարվում էր հիմնականում շարքերի ընդերկայնական ուղղությամբ։ Վերջին տարիներս շարահերկ կուլտուրաների մշակության փխրեցման համար լայն գործածություն է ստացել երկու ուղղությամբ տարվող խաչաձև փխրեցումը, այսինքն շարքերի ուղղությամբ և շարքերին խաչադիր ուղությամբ։ Խաչաձև մշակության եղանակը համարվում է պրոգրեսիվ, որովհետև լայն հնարավորություն է ստեղծում շարահերկ կուլտուրաների փխրեցումը կատարելու ամեն ուղղությամբ, ցանկացած խորությամբ, հավասարաչափ, առանց խարակների և այլն։

Խաչաձև մշակության եղանակով, ինչպես ցույց է տվել գյուղատնտեսության առաջավորների փորձը, յուրաքանչյուր հեկտարին կարելի է 50—60 տոկոսով խնայել բանվորական ձեռքը և բերքատվությունը բարձրացնել 15—20 տոկոսով։ Այդ նշանակում է բերքի ինքնարժեքը իջեցնել մոտ 60 տոկոսով։ Խաչաձև մշակությունը հաջող է իրականացվում այն դեպքում, երբ ցանքը կատարվել է քառակուսի-բնային եղանակով։

Այժմ եգիպտացորենի կուլտիվացման մասին։ Եգիպտացորենի առաջին կուլտիվացիան 10—12 սմ. խորությամբ, խաչաձև կամ միակողմանի մշակության ժամանակ, պետք է կատարել այն դեպքում, երբ բույսի վրա առաջացել են առաջին 3 տերևները։

Կուլտիվացիայից անմիջապես հետո պետք է կատարել նոսրացում՝ քառակուսի-բնային ցանքի դեպքում թողնելով բնում երկու զարգացած և առողջ բույսեր, իսկ սովորական շարային ցանքի դեպքում յուրաքանչյուր 35 սմ. վրա մեկական բույս։ Բույսերի նոսրացման ժամանակ պետք է քաղհանել և փխրեցնել բների շուրջը գտնվող տարածությունները։ Առաջին կուլտիվացիայից սկսած յուրաքանչյուր 15—20 օր հետո հարկավոր է պարբերաբար փխրեցնել միջշարքային տարածությունները 8—10 սմ. խորությամբ։

Եգիպտացորենի և մնացած շարահերկ կուլտուրաների խնամքի համար կարևոր միջոցառում է հանդիսանում նաև նրա սնուցումն ու ոռոգումը։ Պարզված է, որ սնուցումը եգիպտացորենի բերքատվությունը բարձրացնում է 20—25 տոկոսով։

Բամբակենին նույնպես հոգատար խնամք պահանջող կուլտուրա է։ Հայտնի է, որ ցանքից հետո բամբակի խիտ ծլած բույսերն ի-



րար ճնշում են, նեղում։ Բույսի զարգացումը հաջող պայմանի մեջ դնելու համար, անհրաժեշտ է ցանքը նոսրացնել երկու անգամ։ Առաջին նոսրացումը պետք է կատարել բամբակի ծիլերը լրիվ երևալուց հետո, իսկ երկրորդ նոսրացումը՝ առաջինից մոտ 10 օր հետո, երբ բացվում է բամբակենու երկրորդ ու երրորդ իսկական տերևները, յուրաքանչյուր բնում թողնելով մեկական բույս և բունը բնից 12—13 սմ., իսկ ուժեղ հողերում՝ 18—20 սմ. հեռավորության վրա, այն հաշվով, որ յուրաքանչյուր հեկտարի վրա լինի մոտ 90 հազար բույս։ Նոսրացման ժամանակ բներից պետք է հեռացնել թույլ զարգացած, վնասված բույսերը և թողնել ամենաառողջ բույսերը։ Բամբակի նոսրացումը խիստ պատասխանատու գործ է և այն պետք է հանձնարարել բարեխիղճ, փորձված կոլտնտեսականներին։

Բամբակենու արմատային սիստեմը խոնավությամբ ու սննդով ապահովելու համար մեծ նշանակություն ունի ցանքադաշտի փխրեցումը։ Փխրեցումը անհրաժեշտ է կատարել բույսի ծլման առաջին օրերին։

Բամբակենու զարգացման համար բացառիկ նշանակություն ունի ոռոգումը։ Պետք է հետևել, որ բամբակենին իր ամբողջ վեգե-

տացիայի շրջանում ապահովված լինի անհրաժեշտ խոնավությամբ։ Ավազոտ հողերում վեգետացիայի ընթացքում պետք է ջրել հաճախակի մոտ՝ 10 անգամ, թույլ թեքություն ունեցող բերրի հողերում՝ 6—8 անգամ, ստորերկրյա ջրեր պարունակող հողերում՝ 4—5 անգամ, իսկ խոնավ հողերում ըստ բույսի պահանջի՝ 2—3 անգամ։ Բամբակենուն ջուր մատակարարելու և նրա ջրային ռեժիմը կարգավորելու գործում ոչ միայն մեծ նշանակություն ունի ջրելու քանակը, այլև որակը։ Բամբակի դաշտը հավասարաչափ խոնավացնելու, ջուրը ռացիոնալ օգտագործելու, կեղևակալումը կանխելու ամենաարդյունավետ եղանակը առայժմ համարվում է ակոսաջուրը, եթե այդպիսին կատարվում է ագրոտեխնիկական պահանջների համաձայն։

Ակոսները պետք է բացել ջրելուց մեկ-երկու օր առաջ, 15 սմ. խորությամբ։ Ոռոգման ժամանակ անհրաժեշտ է թույլ չտալ դաշտի գերխոնավացում։

Մեր կոլտնտեսային աշխատավորները կպայքարեն բարելավել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների մշակությունը, որպեսզի 1958 թվականը դարձնեն բարձր բերքի տարի։

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՄԱՄՈՒԼԻ ԵՎ ՌԱԴԻՈՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Վ. Ի. Լենինը իր ժամանակին խիստ կարևոր նշանակություն էր տալիս մամուլի և գրականության զարգացմանը մեր երկրում։ Նրա բնորոշմամբ «Թերթը ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ ու կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ է»։

Մեր պարտիայի և կառավարության բացառիկ ուշադրության ու հոգատարության շնորհիվ, այսօր սովետական մամուլը՝ պարբերական հրատարակությունները ու գրքերը իրենց քանակով ու տպագրական տիրաժով հասել են աննախընթաց հաջողությունների։

Ահա այդ մասին են խոսում ներքոհիշյալ թվերն ու փաստերը։

☆ Սովետական իշխանության 40 տարիների ընթացքում ՍՍՌՄ-ում լույս է տեսել 1 միլիոն 386 հազար անուն գիրք, ավելի քան 20 միլիարդ ընդհանուր տիրաժով, 122 լեզուներով, այդ թվում 40 լեզուներով ՍՍՌՄ այն ժողովուրդների, որոնք իրենց գիրն ու գրականությունը ստացել են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո։

☆ Միայն 1957 թվականին ՍՍՌՄ-ում հրատարակված գրքերի տիրաժը կազմեց 1,1 միլիարդ օրինակ, որը 11 անգամ ավելի է քան եղել է 1913 թվականին։

☆ Ներկայումս Սովետական Միության մեջ ամեն մի րոպեի ընթացքում բաց է թողնվում 7500 օրինակ գիրք։

☆ ՍՍՌՄ-ում լույս է տեսնում ավելի քան 3000 ամսագիր և պարբերական հրատարակություններ։ Ամսագրերի տարեկան տիրաժը 500 միլիոն օրինակից ավելի է։

☆ ՍՍՌՄ-ում հրատարակվում է ավելի քան 9900 անուն թերթ՝ Սովետական Միության ժողովուրդների 60 լեզուներով։ Թերթերի միանվագ տիրաժը անցնում է 57,8 միլիոն օրինակից, որը 20 անգամ ավելի է, քան 1913 թվականին։

☆ 1912 թվականին «Պրավդա» թերթը լույս է տեսել 60 հազար օրինակով։ Ներկայումս նրա տիրաժը 5 միլիոն օրինակից ավելի է։

☆ Լրացավ իրենց հիմնադրման օրից՝ «Իզվեստիա» թերթի 40-ամյակը, բելոռուսական «Զվեզդա» թերթինը, որի կազմակերպիչներն ու առաջին խմբագիրները եղել են՝ Մ. Վ. Ֆրունզեն և Ա. Ֆ. Մյասնիկյանը, սովետական երկաթուղայինների «Գուդոկ» թերթինը, որի ակտիվ թղթակիցները հանդիսացել են միջազգային բանվորական շարժման այնպիսի աչքի ընկնող գործիչներ, ինչպիսիք եղել են՝ Մ. Կաշենը, Հ. Բարբյուսը, Գ. Դիմիտրովը, Ու. Ֆոստերը, Հ. Պոլլիտը և ուրիշներ։



☆ 1958 թվականի մայիսի 24-ին լրանում է սովետական երիտասարդության թերթի՝ «Կոմսոմոլսկայա Պրավդայի» առաջին համարի լույս ընծայման 33 տարին։ 1925 թվականին թերթի տիրաժը եղել է 93 հազար օրինակ, իսկ 1958 թվականին այն հասավ 2,3 միլիոն օրինակի։

☆ Սովետական իշխանության տարիներին խոշոր զարգացում է ունեցել նաև սովետահայ մամուլն ու գրականությունը։

☆ 1958 թվականին Հայաստանում լույս է տեսնում 81 անուն թերթ՝ տարեկան 56 միլիոն 95 հազար ընդհանուր տիրաժով։ Անվանական քանակով դա 9 անգամ ավելի է քան 1913 թվականին և 4 անգամ ավելի քան 1920 թվականին։ Թերթերի տիրաժն ավելացել է 25 անգամ։

☆ 1913 թվականին Հայաստանում հրատարակվել է 2 ամսագիր, 1920 թվականին՝ 6-ը, իսկ ներկայումս հրատարակվում են 52 անուն գրական-գեղարվեստական, գիտա-հետազոտական ամսագրեր և բյուլետեններ։

☆ Սովետական կարգերի հաստատման օրից մինչև 1956 թվականը ներառյալ Հայաստանում լույս է տեսել 18.300 անուն գիրք և բրոշյուր՝ 105 միլիոն 581 հազար օրինակ ընդհանուր տիրաժով։

☆ Եթե 1913 թվականին Հայաստանում հրատարակվել է 55 անուն գիրք ու բրոշյուր՝ 80 հազար օրինակ ընդհանուր տիրաժով, իսկ 1920 թվականին, դեռևս

դաշնակցականների տիրապետության ժամանակ՝ 22 անուն, ապա 1956 թվականին բաց է թողնվել 970 անուն գիրք ու բրոշյուր՝ 6 միլիոն 487 հազար ընդհանուր տիրաժով։ Դա 18 անգամ ավելի է քան 1913 թվականին և համարյա 45 անգամ ավելի, քան 1919 թվականին։

☆ Մեր երկրում մեծ զարգացում է ունեցել ռադիոն։ Բուռն թափով առաջ է ընթանում նաև հեռուստատեսությունը։ Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս ռադիոյի զարգացմանը, նա ռադիոն համարում էր թերթ առանց թղթի և տարածության։ Մ. Ի. Կալինինը նկատի ունենալով ռադիոյի մասսայական և ընդգրկման լայն բնույթը, այն համարում էր պրոպագանդայի և ագիտացիայի ամենաուժեղ միջոց։

☆ Սովետական Միության ռադիոկայանները հաղորդումներ են կազմակերպում ՍՍՌՄ ժողովուրդների 89 լեզուներով։

☆ Ամեն ամիս Համամիութենական ռադիոն ՍՍՌՄ 30—35 քաղաքներից տրանսլյացիայի է ենթարկում մինչև 100 համերգ։

☆ Վեցերորդ հնգամյակում ռադիոհաղորդման կայանների հզորությունը մեր երկրում կավելանա մոտավորապես 90 տոկոսով։

☆ 1957 թվականի վերջում ԴՈՍԱԱՖ-ի գծով երկրում բացվել են ավելի քան 20 նոր ռադիոակումբներ։

☆ 1957 թվականին Սովետական Միությունում



գործում էին ավելի քան 30 միլիոն ռադիոընդունիչ կետեր։

☆ 1960 թվականին մեր երկրի բնակչությունը կստանա 10 միլիոն 200 հազար ռադիոընդունիչ, ռադիոլա և հեռուստացույց, դա 2 անգամ ավելի է քան 1957 թվականին։ Ռադիոհեռախոսային կայանների հզորությամբ Սովետական Միությունը բռնում է առաջին տեղը աշխարհում։

☆ 1957 թվականի սկզբին երկրում գործում էին հեռուստատեսային 21 կենտրոն։ 1958 թվականին շարք կմտնեն ևս 25-ը։ 1960 թվականին ՍՍՌՄ-ում հեռուստատեսային կայանների թիվը կավելանա և կհասնի մինչև 75-ի։

☆ Մոտակա տարիներին հեռուստատեսային ցանցով կընդգրկվի 40 միլիոն բնակչություն ունեցող մի հսկայական տարածություն։

☆ Միայն վերջին 3 տարվա ընթացքում գյուղում ռադիոկետերի թիվը ավելացել է 6 միլիոնով և ներկայումս հասնում է 11 միլիոնի։

☆ Մինչև 1957 թվականը Հայաստանում ռադիոֆիկացման է ենթարկվել 680 բնակավայր, որտեղ տեղադրվել են ավելի քան 111 հազար ռադիոկետ, որից 59 հազարը գյուղական վայրերում։ Բացի դրանից ռեսպուբլիկայի բնակիչներն ունեն 87 հազար ռադիոընդունիչ և ավելի քան 3000 հեռուստացույց։

☆ Մինչև 1959 թվականի վերջը ռեսպուբլիկայում ռադիոֆիկացման է ենթարկվելու ևս 400 բնակավայր։

---

# ՄԵԾ ԱՎԱՆԴ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Ց. ԻՎԱՆՈՎ

*1958 թվականի մարտի 31-ը պատերազմի դեմ, ամբողջ աշխարհում խաղաղության համար ժողովուրդների մղած պայքարի պատմության մեջ կմտնի որպես կարևորագույն տարեթիվ։ Այդ օրը Սովետական Միության պետական իշխանության բարձրագույն օրգանը միջազգային խոշորագույն նշանակություն ունեցող որոշում ընդունեց։ Ղեկավարվելով ատոմային և ջրածնային զենքի փորձարկումները ամենուրեք դադարեցնելու և դրանով իսկ կործանիչ ատոմային պատերազմի վտանգից մարդկությանը վերջնականապես ազատելու վեհ ձգտումներով, ՍՍՌՄ Գերագույն Սովետը որոշեց* դադարեցնել Սովետական Միությունում ատոմային և ջրածնային զենքի բոլոր տեսակների փորձարկումները: *Սովետական պառլամենտը ՍՍՌՄ կառավարությանը հանձնարարեց անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել այդ որոշումը կենսագործելու համար և դիմել այդպիսի զենք ունեցող մյուս պետությունների կառավարություններին, կոչ անելով նման միջոցներ ձեռնարկել ապահովելու համար* ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների դադարեցումը ամենուրեք և առհավետ:



*Անհնարին է գերագնահատել Սովետական պառլամենտի այդ բարձր հումանիստական ակտը։ Սովետական մեծ տերությունը կրկին համոզիչ կերպով հաստատեց, որ նա անում է իրենից կախված ամեն բան, որպեսզի վերացնի ժողովուրդների գլխին կախված ատոմային պատերազմի վտանգը և կայունացնի ընդհանուր խաղաղությունը։*

*Միջազգային լայն հասարակայնությունը ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը իրավամբ գնահատում է որպես պատմական մեծ իրադարձություն։ Նրա իմաստն ու նշանակությունն ամենից առաջ կայանում է այն բանում, որ կատարված է առաջին պրակտիկ քայլը միջուկային կործանիչ պատերազմի վտանգի վերացման ուղղությամբ։*

*Պատահական չէ, իհարկե, որ միջուկային զենք ունեցող երեք երկրներից՝ ՍՍՌՄ-ից, ԱՄՆ-ից և Անգլիայից,— այդ քայլն արեց*

հենց Սովետական Միությունը։ Մեր երկիրն արդեն տասը տարուց ավելի է, ինչ հետևողականորեն և անխոնջ կերպով պայքարում է ատոմային և ջրածնային զենքի բոլոր տեսակների անպայմանորեն արգելելու, նրա արտադրությունը դադարեցնելու և այդ զենքի եղած պաշարները համապատասխան վերահսկողությամբ ոչնչացնելու համար։ Ցավոք սրտի, արևմտյան տերությունները զանազան արհեստական պատճառներ բերելով, խուսափում են այդ հրատապ միջազգային պրոբլեմի վերաբերյալ համաձայնեցված որոշում ընդունելուց։ Ի նկատի ունենալով այն, որ քանի դեռ չի հաջողվել հասնել միջուկային զենքի արգելման և ոչնչացման վերաբերյալ համաձայնության, Սովետական Միությունը ելքը տեսնում է այն բանում, որպեսզի ձեռք առնվեն համապատասխան մասնակի միջոցառումներ, որոնք այս կամ այն չափով կմեղմացնեն միջուկային սպառազինությունների ներկայիս մրցավազքի կործանարար հետևանքները։ Անտարակույս, այդ ուղղությամբ առաջնահերթ միջոցառում է հանդիսանում ատոմային և ջրածնային զենքի փորձարկումների դադարեցումը։

Ինչո՞ւ։ Որովհետև ինչքան շարունակվի



միջուկային սպառազինությունների մրցավազքը, այնքան ավելի սպառնալի կդառնան մարդկության համար այն հետևանքները, որոնք իրենց հետ բերում են ատոմային և ջրածնային զենքի փորձնական պայթեցումները։ Պետք է նկատի ունենալ, որ այդ փորձարկումները կապված են մասսայական ոչնչացման զենքի նոր, առավել կործանիչ ու մահաբեր տեսակների մշակման հետ։ Դրանք որոշ իմաստով է՛լ ավելի են նպաստում սպառազինությունների մրցավազքին։ Բավական է, որպեսզի մի երկիր կատարի իր միջուկային զենքի փորձնական պայթեցում, երբ մյուսը պատասխանում է նույն ձևով, ձգտելով հետ չմնալ առաջին երկրից։ Հասկանալի է, որ այդպիսի մրցությունը անընդհատ մեծացնում է ատոմային և ջրածնային զենքի օգտագործմամբ պատերազմի ծագման վտանգը։

Բայց բանը միայն դրանում չէ։ Միջուկային զենքի փորձարկումները ինքստինքյան վնասակար են, որովհետև նրանք փչացնում են մարդկանց առողջությունը։ Ամեն մի նոր միջուկային պայթյուն ավելացնում է ռադիոակտիվ տարրերի կենտրոնացումը օդի մեջ, գետինը ծածկում ռադիոակտիվ նստվածքի նոր շերտով։ Օդի միջոցով սփռվելով

ամենահեռավոր տարածություններում, ռադիոակտիվ նստվածքները թունավորում են կենդանի մարդկանց օրգանիզմը և կործանարար ազդեցություն թողնում նրանց հետագա սերունդների վրա։ Այս տարվա սկզբներին տարբեր երկրների 9.235 գիտնականներ Միավորված Ազգերի Կազմակերպության գլխավոր քարտուղարին մի խնդրագիր ուղարկեցին, որտեղ նրանք նախազգուշացնում էին այն մեծ վտանգի մասին, որ իրենց հետ բերում են փորձնական միջուկային փորձարկումները մարդկանց առողջության համար։ Այդ խնդրագիրը, որի տակ ստորագրեցին 44 պետությունների, այդ թվում ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Անգլիայի, Հնդկաստանի և մյուս երկրների ականավոր գիտնականներ, կոչ էր անում անհապաղ միջազգային համաձայնություն կնքել միջուկային զենքի փորձարկումների դադարեցման մասին։

Թե մարդկության համար որքան լուրջ է փորձնական միջուկային պայթեցումների հետ կապված վտանգը, այդ մասին էր խոսում ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում ունեցած իր ելույթում սովետական ականավոր գիտնական-ատոմագետ, դեպուտատ Ի. Վ. Կուրչատովը։ «Հաշվումները ցույց են տալիս,— ասաց նա,— որ եթե այսուհետև



ես շարունակվեն ատոմային զենքի փորձարկումները նույն տեմպով, ինչպես այժմ, ապա ստրոնցիումի, ցեզիումի և ածխածնի՝ պայթման ժամանակ առաջացող և ամբողջ երկրագնդում տարածվող ռադիոակտիվ իզոտոպների գետնի մակերես իջնելու հետևանքով ապագայում յուրաքանչյուր սերնդից մի քանի միլիոն մարդ կստանա ժառանգական հիվանդություն»։

Արտահայտելով սովետական ժողովրդի կամքը, ՍՍՌՄ կառավարությունը դեռևս սրանից երեք տարի առաջ ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարություններին առաջարկեց, որպեսզի ՍՍՌՄ-ը և երկու արևմտյան տերությունները դադարեցնեն միջուկային զենքի փորձարկումները։ Այդ ժամանակից ի վեր Սովետական Միությունը անխոնջ և հետևողականորեն ձգտում է հասնել այդ հարցի լուծմանը։ Բավական է միայն հիշատակել մի քանի հանրահայտնի փաստեր։ ՍՍՌՄ-ը միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու մասին իր առաջարկները մտցրեց Միավորված Ազգերի Կազմակերպություն։ 1957 թվականի մայիսի 10-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետը դիմեց ԱՄՆ-ի կոնգրեսին և Մեծ Բրիտանիայի պառլամենտին, կոչ անելով համաձայնեցված միջոց-

ներ ձեռնարկել ատոմային և ջրածնային զենքի փորձարկումները դադարեցնելու ուղղությամբ։ 1957 թվականի դեկտեմբերի 21-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետը որոշում ընդունեց, որտեղ նա առաջարկեց, որպեսզի ՍՍՌՄ-ը, ԱՄՆ-ը և Մեծ Բրիտանիան պարտավորություն ստանձնեին մինչև 1959 թվականի հունվարի 1-ը այդ զենքի բոլոր փորձարկումները դադարեցնելու մասին։ Քաջ հայտնի է նաև այն, որ միջազգային կարևորագույն հարցերի մեջ, որոնք Սովետական Միությունն առաջարկում է քննարկել պետությունների ներկայացուցիչների ամենաբարձր մակարդակի խորհրդակցությունում, կանգնած է նաև միջուկային փորձարկումները անհապաղ դադարեցնելու վերաբերյալ հարցը։

Ինչպե՞ս պատասխանեցին Սովետական Միության այդ առաջարկություններին ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները։ Նրանք չհամարձակվեցին բացեիբաց դրանք մերժել։ Բայց փաստորեն նրանք ամեն ինչ արեցին, որպեսզի թույլ չտան դրանք ընդունել։ Երկու արևմտյան տերությունների կառավարությունները սկսեցին ատոմային և ջրածնային զենքի փորձարկումների դադարեցման ուղու վրա դնել մի խոչընդոտ մյուսի հետևից։ Այդ



հարցի վերաբերյալ համաձայնությունը նրանք կախման մեջ դրեցին զինաթափումների այլ, առավել բարդ պրոբլեմների վերաբերյալ պայմանավորվածություն ձեռք բերելուց։ Դրանով իսկ ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանները, կատարելով կապիտալիստական մոնոպոլիաների կամքը, որոնք շահագրգռված են ատոմային սպառազինությունների մրցավազքի և դրանից ստացվող վիթխարի շահույթների մեջ, դրսևորեցին Սովետական Միության հետ միջուկային փորձարկումների հարցի վերաբերյալ պայմանավորվել չցանկանալու իրենց ձգտումը։ Դրա հետևանքով ատոմային և ջրածնային զենքի փորձնական պայթեցումները շարունակվում են, իսկ մասսայական ոչնչացման զենքի նոր, ավելի մահաբեր տեսակների ստեղծման մրցությունը գնալով ուժեղանում է։

Զարմանալի չէ, որ ամենուրեք աճում է խաղաղասեր մարդկանց տագնապն ու զայրույթը, ավելի վճռական է հնչում նրանց պահանջը, մեկընդմիշտ վերջ տալու այդ չարիքին։ Կարելի է առանց չափազանցնելու ասել, որ ներկայումս միջուկային փորձարկումների անհապաղ դադարեցում է պահանջում երկրագնդի բնակչության գերակշռող մասը։

Միակողմանիորեն դադարեցնելով միջուկային փորձարկումները, Սովետական Միությունը բարի օրինակ ցույց տվեց ատոմային ու ջրածնային զենք ունեցող արևմտյան տերություններին։ Բայց ինքնըստինքյան հասկանալի է, որ այդ միջազգային պրոբլեմը չի կարելի լուծել միայն Սովետական Միության միակողմանի ջանքերով։ Այստեղ անհրաժեշտ են բոլոր շահագրգռված պետությունների խաղաղասիրական գործողությունները։ Եվ դա հաշվի առավ ՍՍՌՄ պետական իշխանության բարձրագույն օրգանը, ընդունելով իր պատմական որոշումը։ Գերագույն Սովետի որոշման մեջ ասված է, որ այն դեպքում, եթե ատոմային և ջրածնային զենք ունեցող մյուս պետությունները կշարունակեն դրանց փորձարկումը, ապա ՍՍՌՄ կառավարությունը ազատորեն կգործի միջուկային փորձարկումների հարցում, ելնելով իր անվտանգության շահերից։

Անհրաժեշտություն չկա ապացուցելու, թե զինաթափման պրոբլեմի լուծման և ատոմային սպառազինությունների մրցավազքի վերացման համար ինչպիսի մեծ նշանակություն կունենար միջուկային զենքի փորձարկումների ամենուրեք դադարեցումը։ Միևնույն ժամանակ դա բարենպաստ ազդեցու-



թյուն կունենար ամբողջ միջազգային դրության վրա, կնպաստեր պետությունների միջև վստահության հաստատմանը, կօգներ մյուս շատ միջազգային հարցերի կարգավորմանը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետը դիմեց ԱՄՆ-ի կոնգրեսին և Մեծ Բրիտանիայի պառլամենտին՝ կոչ անելով օգտագործել իրենց ամբողջ ազդեցությունը, որպեսզի բոլոր պետությունների կողմից ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների առհավետ դադարեցման հարցը գտնի իր վերջնական լուծումը։ Միաժամանակ ՍՍՌՄ Գերագույն Սովետը ընդունեց դիմում՝ ուղղված աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին, որտեղ նրանց կոչ արեց ամեն կերպ պաշտպանել այն ջանքերը, որոնք ուղղված են միջուկային զենքի փորձարկումների ամենուրեք և վերջնական դադարեցմանը։

Բոլոր պետությունների պառլամենտներից, և առաջին հերթին ԱՄՆ-ի և Անգլիայի պառլամենտներից, այժմ շատ բան է կախված՝ թե կհետևե՞ն, արդյոք, այդ երկու երկրները Սովետական Միության խաղաղասիրական օրինակին։

Սովետական Միության կողմից ատոմային և ջրածնային զենքի միակողմանի դադարեցման վերաբերյալ ՍՍՌՄ Գերագույն

Սովետի պատմական որոշումը խոշոր միջազգային ռեզոնանս առաջացրեց։ Արտասահմանյան մամուլի տեսաբանները միահամուռ կերպով մատնանշում են, որ այդ որոշումը համաշխարհային հասարակայնության վրա ունեցավ ոչ պակաս ուժեղ տպավորություն, քան Երկրի, սովետական արհեստական արբանյակների բաց թողումը։

Բոլոր երկրների բարի կամքի տեր մարդիկ խորին բավականությամբ և ուրախությամբ ողջունեցին ՍՍՌՄ Գերագույն Սովետի այդ նոր խաղաղ նախաձեռնությունը։

Մեծ Չինաստանի, ժողովրդական դեմոկրատիայի բոլոր պետությունների աշխատավորները միահամուռ կերպով արտահայտեցին իրենց լիակատար համերաշխությունը այդ որոշման հետ։

Այն լիովին պաշտպանում են նաև մյուս երկրների խաղաղասեր մարդիկ։ «Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը,— ասված է այդ կազմակերպության հրապարակած դիմումի մեջ,— ամբողջ սրտով ողջունում է Սովետական Միության ժողովրդին և կառավարությանը համարձակ, վճռական և հումանիստական ակտի՝ միջուկային զենքի հետագա բոլոր փորձարկումների միակողմանի դադարեցման կապակցությամբ։ Այդ քայլը



մարդկության պատմության մեջ պետք է շրջադարձային կետ հանդիսանա, եթե այն անհապաղ և ազնիվ արձագանք գտնի մյուս պետությունների կողմից, որոնք միջուկային զենք ունեն»։

Միջուկային զենքի դադարեցման համար պայքարի ճապոնական ազգային խորհուրդը 35 միլիոն ճապոնացիների անունից, որոնք ստորագրել են այդ զենքի արգելման մասին կոչի տակ, ջերմ շնորհակալություն հայտնեց Սովետական Միությանը միջուկային փորձարկումների միակողմանի դադարեցման մասին որոշման կապակցությամբ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշմանը հավանություն տալու մասին ելույթներով հանդես եկան մի շարք պետությունների կառավարությունների ներկայացուցիչներ, զանազան քաղաքական պարտիաների ներկայացուցիչներ, ականավոր գիտնականներ, պառլամենտների անդամներ, Եվրոպայի, Ասիայի, Աֆրիկայի և Ամերիկայի շատ երկրների արհեստակցական միությունների և այլ հասարակական գործիչներ։

Սովետական Միության նոր խաղաղասիրական և հումանիստական ակտի վիթխարի ազդեցության տակ աշխարհի տարբեր երկրներում ավելի ու ավելի բարձր են հնչում





այն բանի վերաբերյալ պահանջները, որպեսզի ԱՄՆ-ը և Անգլիան հետևեն ՍՍՌՄ-ի օրինակին և իրենց հերթին դադարեցնեն ատոմային և ջրածնային զենքի փորձարկումները։

Ինչպե՞ս վերաբերվեցին Սովետական Միության խաղաղ նախաձեռնությանը ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները։ Միջուկային զենքի փորձարկումների դադարեցման մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը հրապարակվելուն պես ԱՄՆ-ի դիվանագիտական գերատեսչությունը փորձեց կասկածանքի ստվեր նետել այդ որոշման վրա։ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը հապճեպ մի հատուկ հայտարարություն հրապարակեց, որտեղ փորձ էր կատարվում անվստահություն առաջացնել ՍՍՌՄ-ի խաղաղ քայլի նկատմամբ և ըստ էության կոչ էր պարունակում ատոմային սպառազինությունների մրցավազքի քաղաքականությունը շարունակելու մասին։ Սակայն ամերիկյան դիվանագիտության ձեռնարկած անշնորհք մանյովրը բացահայտորեն չտվեց սպասելի արդյունքներ, թեև այն պաշտպանություն էր գտնում պետական քարտուղար Դալեսի և պրեզիդենտ Էյզենհաուերի պրես-կոնֆերանսներում ունեցած ելույթներում։ Նույնիսկ ա-



մերիկյան շատ բուրժուական թերթեր ստիպված էին ընդունել, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը վարկաբեկելու փորձը ձախողման ենթարկվեց։

Խաղաղասեր ժողովուրդները կրկնապատկված էներգիայով և հաստատ վճռականությամբ շարունակում են պայքարը հանուն միջուկային զենքի փորձարկումների ամենուրեք դադարեցման, հանուն նրա արգելման, հանուն ատոմային պատերազմի սպառնալիքի լիակատար վերացման։

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ